## Շնորհակալիք

Այրի Տիկին Հայկանուշ Արզումանեան եւ զաւակները՝ Արամ, Սեդրակ, Արմենուհի եւ Հայկուհի, Տէր եւ Տիկին Պօղոս Արզումանեան, Այրի Տիկին Ցուլեանէ Եարմանեան, իրենց խորին շնորհակալութիւնները կը յայտնեն ամէն անոնց որոնք, անձամբ, նամակով եւ հեռագրով ցաւակցութիւննին յայտնեցին, իրենց, որդւոյն, եղբօր, եղբօրորդւոյն՝ ՀԱՅԿ ԱՐԶՈՒՄԱՆԵԱՆի մահուան առթիւ:

Մասնաւոր շնորհակալութիւն Հ. Մ. Ը. Մ.ի Մարսէյլի մասնաճիւղին վարչութեան եւ անդամներուն, որոնք լիուլի կատարեցին իրենց պարտականութիւնը, թաղման եւ հոգեհանգստեան արարողութիւններուն առթիւ:

### ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

Գանեէօ-Քաշանի Արծիւ ենթակոմիտէն իր խորին ցաւակցութիւնը կը յայտնէ ընկ. Հրանդ Քէօսէեանի իր եղբօր՝ ընկ. ԳԱՌՆԻԿ ՔԷՕՍԷԵԱՆԻ դառնաղէտ եւ կսկծալի մահուան առթիւ:

×

Գանեէօ-Քաշանի Արծիւ ենթակոմիտէն իր ցաւակցութիւնները կը յայտնէ ընկերներ Յովհաննէս եւ Նշան Ցակոբեաններուն՝ իրենց մօր դառնաղէտ մահուան առթիւ:

×

Մեր խորին ցաւակցութիւնները կը յայտնենք Քէօսէեան ընտանիքին՝ ընկ. ԳԱՌՆԻԿ ՔԷՕՍԷԵԱՆի եղերական մահուան առթիւ:

ՍԷՐԷՆԿԻՒԼԵԱՆ ընտանիք

Մարսէյլ, 4 դեկտ. 936

×

«Համազգային»ի Շավիլի մասնաճիւղը իր խորին ցաւակցութիւնը կը յայտնէ Այրի Տիկ. Ս. Սարգիսեանի եւ իր պարագաներուն, իր ամուսնոյն եւ իրենց ազգականին՝ ՍՏԵՓԱՆ ՍԱՐԳԻՍԵԱՆի եղերական մահուան առթիւ:

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Տէր եւ Տիկին Փ. Ուստուլիկեան, Այրի Տիկ. Խաչիկեան եւ պարագաները իրենց շնորհակալութիւնը կը յայտնեն Զէնկիլէքի Հայր. Միութեան, Դպրոցասէր Տիկնանց Վարժարանի Սանուց Միութեան, Հ. Յ. Դ. Ալֆորվիլի Ս. Մինասեան ենթակոմիտէին, Ֆ. Կ. Խաչի Մասնաճիւղին եւ ամէն անոնց որոնք անձամբ եւ գրաւոր ցաւակցութիւն յայտնեցին իրենց որդւոյն՝ ՄԿՐՏԻՉ—ԹԱՖՖԻի մահուան առթիւ:



## Ֆ. Կ. ԽԱՉԻ ՓԱՐԻԶԻ ՄԱՍՆԱՃԻՒՂԻՆ

## ՏԱՐԵԿԱՆ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

ԱՅՍՕՐ ԿԻՐԱԿԻ ՕՐ ԺԱՄԸ 4-12

**VICTOR HUGO**Ի ՇՔԵՂ ՍՐԱՀՆԵՐՈՒՆ ՄԷՋ

**46bis Rue St. Didier**

*Իր ընտանեկան հաճելի մթնոլորտով, իր գուարթ շրջանակով, իր ընտիր նուագով, սիրուն անակնկալներով պիտի գայ արդարացնել Կ. Խաչի աւանդական համբաւը, որպէս եղանակին ամէնէն գեղեցիկ երեկոյթներէն մէկը:*

ՓՈՒԹԱՑԷՔ ԶՈՒԱՐՃԱՆԱԼ ԵՒ ՄԱՆԱՒԱՆԴ ՓՈՒԹԱՑԷՔ ՕԳՆԵԼ ՁԵՐ ԼՈՒՍԱՒՈՐ ԱՆՈՐ ԲԱԶՄՕԳՈՒՏ ՁԵՌՆԱՐԿՆԵՐՈՒՆ

ՅԱՅՏՆԻ ԵՐԳՉՈՒՀԻ ՏԻԿ. ԱՂԱՊԱՊԵԱՆ

(*Պարսկաստանէն նոր եկած*) կ'երգէ հայ ժողովրդական երգեր:

*Կը պարէ Սօֆիայի Օփէրայէն* **SOPHIE ERRIO** (*10 տարեկան*)

**JAZZ GARO QANTARO**

Մուտքը 7,50 ֆրանք

## ՀԱՅ ԶԻՆՈՒՈՐԻ ՕՐ

Զինուորական գեղարուեստական երեկոյթ - պարահանդէս

(Նուիրուած Ուրֆայի հերոսամարտին)

*Նախաձեռնութեամբ Հայ Կամ. եւ Մարտիկներու Միութեան:*

*Տեղի կ'ունենայ Դեկտեմբեր 19ին ճոխ եւ բացառիկ յայտագիր:*

**Salle des Ingénieurs Civils***ի մէջ,*

**19 rue Blanche,** *մեթրօ* **Blanche** *եւ* **Trinité**

*Հովանաւորութեամբ ԶՕՐ. ԴՐՕՄՕՆԻ*

*եւ նախագահութեամբ Սուրիոյ զինուորական բոլոր ուժերու վերին հրամանատար ԶՕՐ. ՇՎԱԼԻԷԻ*

50 ՀՈԳԻՆՈՑ ԶԻՆՈՒՈՐԱԿԱՆ ՆՈՒԱԳԱԽՈՒՄԲ

*Դադարի միջոցին պիտի ներկայացուի հայկական ֆիլմ մը:*

## ՍԻՆՖՈՆԻՔ ՄԵԾ ՆՈՒԱԳԱՀԱՆԴԷՍ

## ԱՐԱՅ ՊԱՐԹԵՒԵԱՆԻ

13 *Դեկտ. կիրակի կէսօրէ վերջ ժամը ճիշդ 3ին,* **Salle Erard***ի մէջ*

**13 Rue du Mail, Métro : Sentier**

*Կը մասնակցին*

*միջազգային սէնֆօնիք նուագահանդէսներու* Solistе *ջութակահարներ*

ԼԻՏԻ ՑԷՄԻՐՃԵԱՆ ԵՒ ԺԱՆ ԻՋՆԱՐ

50 ՀՈԳԻՆՈՑ ՆՈՒԱԳԱԽՈՒՄԲ

*Յայտագրին մէջ կ'անցնին Պէթհօվէնի Բ. սէնֆօնին, ինչպէս նաեւ Հայաստանի Հայ հեղինակներու վերջին գործերէն՝ ԱԼՄԱՍՏ* (Սպենդեարեանի) *եւ ԱՂԹԱՄԱՐ* (Տէր-Ղեւոնդեանի):

*Պարթեւեանէ՝ նոր գործ մը՝ «ԱՆՏԱՌԻՆ ՄԷՋ ՆՈՅԵՄԲԵՐԻՆ» նկարչական երաժշտութեան նմոյշ մը՝ ընկերակցութեամբ տաւիղի:*

Տոմսերու գիներ՝ 7, 10, 15 եւ 20 ֆրանք:

Կը վաճառուին Հրանտ Սամուէլի մօտ, *61 Rue Mr. le Prince*:

## ԴՊՐՈՑԱՍԷՐԻ ՎԻՃԱԿԱԽԱՂԻ ՀԱՆԴԷՍԸ

տեղի պիտի ունենայ դեկտ. 13, կիրակի կէսօրէ վերջ, ժամը 3ին, վարժարանին մէջ, 1 Bld. du Nord, Le Raincy

*ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ՃՈԽ ԲԱԺԻՆՈՎ*

*Ղեկավարութեամբ Ա. ԳՄԲԷԹԵԱՆԻ կը ներկայացուի*

*Պատկեր մը ՀԻՆ ԱՍՏՈՒԱԾՆԵՐԷՆ, ՊԱՂՏԱՍԱՐ ԱՂԲԱՐ*

*եւ ուրիշ անակնկալներ:*

*Հանդէսէն եւ վիճակախաղէն վերջ տեղի կ'ունենան եւրոպական պարեր, մինչեւ ժամը 12, ընտիր նուագախումբի մը ընկերակցութեամբ:*

*Ամէն ջանք թափուած է ցերեկոյթը խիստ հաճելի ընծայելու համար:*

Վիճակախաղի տոմսերը կը ծառայեն իբրեւ մուտքի տոմս. չունեցողները կրնան ստանալ վարժարանէն:

ՄԱՆՕԹ.— *Gare de l'Est*էն առնել ժամը 2.18, 2.27 եւ 2.46ի շոգեկառքը: *Opéra*էն եւ *Jaurès*էն օթօպիւս *21A* եւ իջնել *Rainey Pavillon*:

## ՄՇԱԿՈՅԹԻ ՕՐ

*ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԱԾ ՀԱՄԱԶԳԱՅԻՆԻ ԿԵԴՐ. ՎԱՐՉՈՒԹԵԱՆ ԿՈՂՄԷ*

*Տեղի պիտի ունենայ Դեկտ. 13ին, կիրակի կէսօրէն յետոյ ժամը 2.30ին*

**Société de Géographie***ի սրահին մէջ,*

**184 Bld. St. Germain**

Հանդէսը նուիրուած է ՀԱՅ ԲԱՆԱՍՏԵՂԾՈՒԹԵԱՆ:

*Պիտի Նախագահէ Պ. Ա. ՉՕՊԱՆԵԱՆ,*

*Պիտի բանախօսէ՝ Պ. Շ. ՆԱՐԴՈՒՆԻ*

*Խօսք պիտի առնեն նաեւ Տիկ. Ա. ԱԻԵՏԻՍԵԱՆ*

*եւ ՀԱՅՐ ՎԱՀԱՆ ՅՈՎՀԱՆՆԷՍԵԱՆ*

Գեղարուեստական բաժնին իրենց սիրայօժար մասնակցութիւնը կը բերեն *ՕՐ. Տ. ՋԱՌԱՓԵԱՆ* (*դաշնակ*), *ՏԻԿ. ԱՐՇԱԼՈՅՍ ՍԱՐԳԻՍԵԱՆ* (*արտասանութիւն*), *ՕՐ. ՊԻՒԼՊԻՒԼԵԱՆ* (*երգ*), *Պ. Ց. ԱՂԱՋԱՐԵԱՆ* (*ջութակ*), *Պ. Ն. ՊԷՇԻԿԹԱՇԼԵԱՆ* (*արտասանութիւն*), *Պ. Թ. ՉԱՐԴԱՐԵԱՆ* (*արտասանութիւն*) *Պ. ԽՍՀԱԿԵԱՆ* (*երգ*), *Ե. ԱՒԵՏԻՍԵԱՆ եւայլն:*

Մուտք՝ 7 եւ 4 ֆրանք:

Տոմսերը կը ծախուին «Յառաջ»ի խմբագրատունը, Հր. Սամուէլի գրատունը եւ Պ. Երուանդ Յարութիւնեանի մօտ, 13 rue d'Orsel, Փարիզ:

## Ցերեկոյթ — Պարահանդէս

*կազմակերպուած Հայ Երիտասարդաց Ակումբի կողմէ*

տեղի կ'ունենայ այսօր, կիրակի կէսօրէ վերջ ժամը 5էն մինչեւ կէսգիշեր:

26 Ave. de Tokio, Métro Alma

Գեղարուեստական բաժին.— *Պ. Ն. ՂՈՒԿԱՍԵԱՆ կ'երգէ Ալմաստ օփէրայէն կտոր մը, Ժ. ՇԱՀ-ՊԱՐՈՆԵԱՆ* (*թառ*), *ՕՐ. ԺԻՆԻՍ ԱՖԵԱՆԱՍԵԱՆ* (*դաշնակ*), *Ա. ԱՌԱՔԵԼԵԱՆ* (*երգ*), *ՉԱՐՈՒՇԻ ՃԱՄԿԱՐԵԱՆ* (*հայկական պար*), *ԿԻՆՏՕ* (*պար*):

*ՃԱՇ, ԵՒՐՈՊԱԿԱՆ ՊԱՐԵՐ* | *ՃՈԽ ԲՈՒՖԷ*

*Մուտք՝ 6 ֆրանք:* | *Ուրախալի ժամանց:*

## Դերասան Յ. Ղազարեանի ներկայացումները

*Նախաձեռնութեամբ Մարսէյլի Բարձր Հայքի Հայր. Միութեան Մարսէյլի տրամ-օփէրէթ խումբը ղեկավարութեամբ դեր. Յ. ՂԱԶԱՐԵԱՆԻ եւ մասնակցութեամբ Տիկ. Սիրուշի, Պ.Պ. Ս. Ազարեանի, Վ. Տէր-Վարդանեանի, Տիկ. Մատլէնի, Օր. Զատիկի, Պ. Պ. Մակարեանի, Բէշէճեանի*

ԿԸ ՆԵՐԿԱՅԱՑՆԷ ԱՐՇԻՆ ՄԱԼ ԱԼԱՆ

*ՊՈՒԼՎԱՐ ՕՏՏՕԻ ՄԷՋ.— Այսօր, կիրակի կէսօրէ վերջ ժամը 2.30ին, Պառ Էնթէրնասիոնալի սրահին մէջ, 230 Շըմէն տը Մատրակ:*

*ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ.— Այսօր, կիրակի երեկոյ ժամը 8.30ին, Շահրիկեան սրահին մէջ, 5 Րիւ տը լ'Էքլիփս:*

Արեւելեան Նուագ: | Գիները՝ ժողովրդական:



Le Gérant: H. STEPHAN

Imprimerie A. DER (AGOPIAN) 17, Rue Dameame, PARIS (13)

բիոյ խորհրդարանին հետ որ եւ է կապ ունենալու. Հետեւաբար այդ շրջանէն երեսփոխան պէտք չէ ընտրուի, Սուրիոյ խորհրդարանին համար։ Բայց, օրինակ, Ֆրանսայի կողմէ ներկայացուցիչ մը կրնայ մասնակցիլ Սանճաքին ինքնավար կառավարութեան ։

## Անգլիոյ նոր թագաւորին առաջին գործերը

Շաբաթ օրուան հանդիսաւոր հռչակումէն վերջը, Անգլիոյ ծօրճ Զ. Թագաւորը անմիջապէս գործի ձեռնարկեց, առանձին-առանձին պատգամագիրներ ուղղելով նաւատորմին, բանակին եւ օդատորմիղին։ Կիրակի օր հետեւեալ ճառը խօսեցաւ գահակալութեան խորհուրդին առջեւ.

—« Ձեզի կը ներկայանամ այնպիսի պարագաներու մէջ որոնք աննախընթաց են մեր երկրին պատմութեան մէջ։ Հիմա որ թագաւորութեան պարտականութիւնները ինծի կ'իյնան, ձեզի կ'ապահովեմ հաւատարմութիւնս սահմանադրական կառավարութեան ամենախիստ սկզբունքներուն եւ վճիռս՝ գործելու միայն եւ միայն բրիտանական ազգերու հասարակապետութեան բարգաւաճման համար։ Կինս ինծի հետ ըլլալով օգնելու համար, կը ստանձնեմ ինծի ինկած ծանր պարտականութիւնը։ Ստանձնելով եղբօրս ժառանգութիւնը, առաջին գործս կ'ըլլայ անոր ընծայել դուքսի տիտղոսը։ Ան այսուհետեւ պիտի ճանչցուի Ն. Ա. Բ. Ուինզըրի դուքս։

«Դուքս»ը անմիջապէս մեկնած ըլլալով Անգլիայէն, Աւստրիա գնաց Ֆրանսայի եւ Զուիցերիոյ ճամբով ։

### ԶԱՆԱԶԱՆ ԼՈՒՐԵՐ ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ԳԵՐՄԱՆԻԱ պատասխանելով անգլեւֆրանսական առաջարկին՝ Սպանիոյ դէպքերուն չմիջամտելու եւ պատերազմը միջնորդութեամբ դադրեցնելու մասին, անօգուտ կը գտնէ որ եւ է ձեռնարկ։ Մնաց որ, Գերմանիոյ ձեռքերը կապուած են, քանի որ կը ճանչնայ ապստամբ կառավարութիւնը ։

ՊԱՐՍԵԼՈՆԱՅԻ կառավարութեան միջեւ պառակտում ծագած է, Քաթալոնիոյ նահանգին անջատման մասին։ Համայնավարները եւ Թրոցքիականները իրարու դէմ ելած են, ինչ որ «անձնապաշտութիւն» կը համարուի, հակաֆաշական տարրերու յաղթութեան տեսակէտէն։

25,000 ԱՐԻՆԵՐ (սկաուտ) համախմբուելով Փորթ Վերսայլի առջեւ, դիմաւորեցին իրենց պետը, Լորտ Պէյտըն Փաուել ։

ԸՆԿԵՐԱՅԻՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹԵԱՆ (Հրեղէն Խաչ) շրջանային համագումարը բացուեցաւ Սթրազպուրկի մէջ։ Այս առթիւ գնդապետ լա Ռօք եւ ուրիշներ քննադատեցին կառավարութեան քաղաքականութիւնը, եւ շեշտեցին թէ «համայնավարութիւնը պատերազմի կ'առաջնորդէ։ Մենք խաղաղութիւնը պիտի փրկենք այնքան որքան պայքարինք համայնավարութեան դէմ»։ Ժողովը արգիլուած ըլլալով, կազմակերպիչները հացկերոյթի մը վերածեցին զայն, յետոյ փորձեցին ցոյց մը սարքել եւ այս առթիւ խռովութիւններ ծագեցան ։

21 ԱՄԵՐԻԿԵԱՆ ԱԶԳԵՐ խաղաղութեան դաշինք մը ստորագրեցին Պուէնոս Այրէսի մէջ, առաջնորդութեամբ Մ. Նահանգներու նախագահին։ Ուրեմն Ազգաժողով Ազգաժողովի դէմ ։

ԵԹՈՎՊԻՈՅ մայրաքաղաքին մէջ ընդհ. հիւպատոսութիւն մը պիտի հաստատէ Ցունաստանի կառավարութիւնը։ Ասով տասնի պիտի հասնի իտալական գրաւումը ճանչցող պետութեանց թիւը ։ Մինչեւ հիմա Եթովպիոյ յունական շահերը կը պաշտպանէր Գահիրէի հիւպատոսը ։

ԱԶԳ. ՎԻՃԱԿԱԽԱՂԻ 12րդ շարքին տոմսերը հրապարակ պիտի հանուին հինգշաբթի, 17 դեկտեմբեր։ Ինչպէս 11րդ, նոյնպէս այս շարքը պիտի ունենայ 1,200,000 տոմսակ եւ 72 միլիոն ֆրանքի պարգեւներ որոնց 5,600,000ը նոր հաստատուած պայմաններու համաձայն ։

ՇԱՔԱՐԻ ՏԱԳՆԱՊԸ կը շարունակուի տակաւին։ Փոշի շաքար կը գտնուի, իսկ կտորով՝ մեծ դժուարութեամբ։ Խանութպանները այս տագնապը կը վերագրեն վերջին գործադուլներուն։ Անցեալ յունիսէն իվեր կարելի չէ եղած վերահաստատել մթերքը ։ Մեծ նպարատուն մը դեկտ. 8 – 16 կրցեր է ճարել միայն 600 քիլօ շաքար, մինչդեռ օրական սպառումը 3000 քիլօ է։

ԱՐՋ ՄԸ ԱՐՄԱՏԷՆ թոցուց 11 տարեկան տղու մը աջ թեւը, Կրընոպլի կենդանաբանական պարտէզին մէջ։ Թեւը ցանկապատէն ներս երկարած էր, հաց տալու համար։ Օգնութեան հասան, բայց շատ ուշ էր։ Տղուն վիճակը շատ ծանր է։



**ԼՈՅՍ ՏԵՍԱՒ**



### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

— o —

Ընկեր Հրանտ Քէօսէեան հնարաւորութիւն չունենալով առանձին նամակներ ուղղելու, կը փութայ հրապարակաւ իր խորին շնորհակալութիւնը յայտնել բոլոր այն մարմիններուն, ընկերներուն եւ միութեանց, ինչպէս եւ Դաշնակցական մամուլի խմբագրութեանց, որոնք իրենց վշտակցութիւնը յայտնել իր ողբացեալ եղբօր՝ ԸՆԿԵՐ ԳԱՌՆԻԿ ՔԷՕՍԷԵԱՆԻ եղերական մահուան առթիւ։

### ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

Անիէռ Պուա Քոլոմպի «Արաս» ենթակոմիտէն իր խորին ցաւակցութիւնը կը յայտնէ ընկ. ՍԵԴՐԱԿ ՍԱՍՈՒՆԻի եղերական մահուան առթիւ իր եղբայրներուն եւ պարագաներուն։

X

Հ. Յ. Դաշնակցութեան Վալանսի կոմիտէն եւ իր շրջանի՝ Ռոմանի, Փրիվաի եւ Փօն տ'Օպնայի խումբերուն կողմէ իր վշտակցութիւնը կը յայտնէ եւ կ'ողբայ ընկ. Ս. ՍԱՍՈՒՆԻի դառնաղէտ կորուստը։

X

Հ. Յ. Դ. Լիոնի Վարանդեան կոմիտէն խոր ցաւակցութիւն կը յայտնէ ընկ. Ս. ՍԱՍՈՒՆԻի եղերական մահուան առթիւ իրպարագաներուն։

X

Հ. Յ. Դ. Վիէնի կոմիտէն իր եւ շրջանի բոլոր ընկերներուն կողմէ խորին ցաւակցութիւն կը յայտնէ ընկ. Կարօ Սասունիին եւ ընտանեկան պարագաներուն, իր եղբօր՝ ընկ. Ս. ՍԱՍՈՒՆԻի եղերական մահուան առթիւ։

Բարխեան ընտանիքը սրտի խորունկ կսկիծով իր ցաւակցութիւնը կը յայտնէ իր անզուգական հայրենակից ընկ. Ս. ՍԱՍՈՒՆԻի եղերական մահուան առթիւ, իր եղբայրներուն՝ ընկ. Կարօի, Արմէնի եւ բոլոր պարագաներուն։

Մարգար Բարխեան




Le Gérant: H. STEPHAN
Imprimerie A. DER (AGOPIAN)
17, Rue Damesme. PARIS (13

այլեւս չի կրնար շարունակել չէզոքութեան քաղաքականութիւնը, եթէ Գերմանիա շարունակէ չօշափելի օգնութիւն հասցնել Սպանիոյ ապստամբներուն։

Դարձեալ նոյն աղբիւրէն կը հաւաստեն թէ Պ. Իտըն խնդրած է Լոնտոնի գերմանական դեսպանէն, հաղորդել Պ. Հիթլէրի թէ անգլիական կառավարութիւնը շատ ծանրակշիռ պարագայ մը կը նկատէ գերման կամաւորներու առաքումը դէպի Սպանիա։

*** Մ. Նահանգներու արտաքին նախարարը քաղաքական ճառ մը խօսելով, «անթոյլատրելի» գտաւ պատերազմը եւ յայտարարեց.— «Կա՛մ պէտք է ոչնչացնենք պատերազմը, եւ կամ պատերազմը պիտի ոչնչացնէ մեզ»։

### ՅԱՆԱՋՈՐԴ ԼՈՒՐԵՐ ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՏՕՆԱԿԱՆ ԱՐՁԱԿՈՒՐԴԻ պատճառով «Յառաջ»ի յաջորդ համարը լոյս կը տեսնէ Կիրակի օր։

ԳԵՐՄԱՆԻՈՅ պատերազմական նախարարութիւնը շրջաբերականով մը կը հրաւիրէ քաղաքային ըժիշկները՝ արձանագրուիլ զինուորագրութեան գրասենեակներուն մէջ։ Ինչպէս գրած էինք, միեւնոյն ատեն հրամայուած է անցագիր չտալ զինուորգու Գերմանացիներու, առանց զինուորական իշխանութեանց արտօնութեան։ Այս արգելքին ենթակայ են 18էն 45 տարեկանները։

ԵԹՈՎՊԻՈՅ ԳՐԱՒՄԱՆ ճանաչումները իրարու կը յաջորդեն։ Զուիցերիա եւս հաղորդեց իր ճանաչումը. իսկ Պելժիա կը պատրաստուի հիւպատոսութեան վերածել Ատիս-Ապէպայի դեսպանութիւնը, ինչ որ դարձեալ ճանաչում կը նշանակէ։

ՆՈՐ ԳՈՐԾԱԴՈՒԼՆԵՐԷ կը վախցուի, Փարիզի եւ գաւառի մէջ։ Մսավաճառներու գործադուլը յետաձգուած է առ այժմ, ծխախոտի բանուորներու գործադուլը կը շարունակուի Նանթի մէջ։ Հիւսիսային շրջանի մետաղագործական հաստատութեանց բանուորներուն գործադուլն ալ չէ վերջացած դեռ, հակառակ վարչապետին միջամտութեան։ Գործատէրերը երէկ հաղորդեցին իրենց պատասխանը։

ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ չորս զինեալ աւազակներ օրը ցերեկով յարձակում գործելով քաղաքապետական գանձապահի մը վրայ, կողոպտեցին անոր փոխադրած 290,000 ֆրանքը եւ անհետացան։

1350 ՄԻԼԻՈՆ ՖՐԱՆՔԻ փոխառութիւն մը հրապարակ պիտի հանուի Փարիզի մէջ, Լեհաստանի համար, ֆրանսական կառավարութեան երաշխաւորութեամբ։

## Հ. Յ. Դ.

### Փարիզ

Հ. Յ. Դ. ՊԼՆԵՋԻ-ԹԻՆԼԵԻ Ղոտիւ Խոմակոմիտէի Ակումբի բացման հանդէսը այսօր ուրբաթ կէսօրէ վերջ ժամը 3ին, 52 rue Isidore Neuyrale Պանեէօ։ կը հրաւիրուին բոլոր ընկերները։

ՎԱՂԱՆՍԻ կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները 26 դեկտ. շաբաթ երեկոյ ժամը ճիշտ 8ին, Հ. Յ. Դ. Սիամանթօ Ակումբին մէջ։ Ներկայանալ անդամատետրով։

## ԹԱՏԵՐԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

Նախաձեռնութեամբ Մարսէյլի Ուրֆայի Հայր. Միութեան

Կը ներկայացուի ՈՒՐՖԱՅԻ ՀԵՐՈՍԱՄԱՐՏԸ

ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ.— 26 Դեկտ. շաբաթ երեկոյ ժամը 8.30ին

Շաճրի կեան սրահին մէջ, 5 րիւ տը լ'էքլիփս։

Մուտք՝ 4 եւ 3 ֆր.։

ՓՈՄՈՆԻ ՄԷՋ.— 27 Դեկտ. կիրակի երեկոյ ժամը 8.30ին

Վարանդեան սրահին մէջ, 10 Պուլվար Մարկրիթ

Մուտք 3 ֆր.։



### ՅԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

Շավիլի Համազգայինի մասնաճիւղը իր խորին ցաւակցութիւնը կը յայտնէ Ս. ՍԱՍՈՒՆԻի եղերական մահուան առթիւ իր եղբայրներուն եւ պարագաներուն։

Le Gérant: H. STEPHAN
Imprimerie A. DER (AGOPIAN)
17, Rue Damesme, PARIS (13)



## Թատերական ներկայացում

կազմակերպուած Ֆ. Կապոյտ Խաչի Ալֆորվիլի մասնաճիւղին կողմէ 26 դեկտ. շաբաթ երեկոյ ժամը 8.30ին, Հայ Ակումբին մէջ, Ալֆորվիլ

Կը ներկայացուի ԱՐՑՈՒՆՔԻ ՀՈՎԻՏԸ

Տոմսեր 5 ֆր. փոքրիկներու՝ 1 ֆր.։

## ՅՈԲԵԼԵԱՆԱԿԱՆ ՊԱՐԱՆՑԻԿ ԵՐԵԿՈՅԹ

ՀՆՉԱԿԵԱՆ ԸՆԴՀ. ՊԻՈՒՐՕՅԻ ՓԱՐԻԶԻ ՄԱՍՆԱՃԻՒՂԻՆ

Հիմնարկութեան 25րդ տարեդարձին առթիւ

Նախագահութեամբ ԶԱՐԵՀ ՆՈՒՊԱՐ ՊԷՅԻ

կիրակի, 27 Դեկտ. ժամը 16էն մինչեւ 24

Hôtel Moderneի (Place de la République) շքեղ սրահներուն մէջ

Մասնակցութեամբ Փարիզի Հայ Օրիորդաց եւ Հայ Երիտասարդաց Միութիւններուն։

Ընտիր նուագախումբ. գեղարուեստական բաժին, հաճելի անակնկալներ։

պիւֆէ՝ Hôtel Moderneի կողմէ. դիւրամատչելի գիներով։

ՄՈՒՏՔ 8 ՖՐ.։

Հայ Օրիորդաց, Հայ Երիտասարդաց Միութեանց անդամներուն եւ հայ ուսանողներու համար 5 ֆր.։

## ԵՐԵԿՈՅԹ-ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

Փարիզի եւ շրջանի Մարզուանցիներու Հայր. Միութեան կողմէ

26 Դեկտ. Շաբաթ գիշեր ժամը 9էն մինչեւ լոյս

Սալ Հօրթիքիւլթիւրի մեծ սրահը, 84 րիւ Կրընէլ, մէթրօ Պաք

Մուտք՝ կիներու 5 ֆր. այրերու 7.50 ֆր.։

ՀԱՄԱԹՈՒԳԱԹՑԻՆԵՐՈՒ Հայր. Միութեան Ալֆորվիլի, Իթալիի եւ Իսիի մասնաճիւղերու վարչութիւնները ճաւաքաբար խորհրդակցական ժողովի կը հրաւիրէ Թոգաթի եւ շրջաղովի անդամ եւ ոչ-անդամ բոլոր հայրենակիցները այսօր կիրակի կէսօրէ վերջ Զուլվառ թօտէն, Գ. Վարդեանի սրճարանը: կը խօսին՝ Գ.Գ. Մանուշեան եւ Յարութիւն Քէչիշեան:



...ղեցկօրէն կահաւորուած: Շէնքին ետեւը կը գտնուին մարզադաշտեր, զբօսական խաղերու համար, խորը՝ հսկիւրի չափ կառատուններ՝ մանկական կառքերու համար: Սանդուղները եւ բակերը կը մաքրեն ոչ թէ զինուորներու կիները, այլ մասնաւոր մարդիկ, որոնք ածուխն ալ կը փոխադրեն: Իւրաքանչիւր յարկաբաժնի վարձքն է օրական մէկ շիլին (5 ֆրանք), մէջն ըլլալով տաքութիւնը եւ լոյսը: Նոյն հրապարակ խայծերը՝ օդանաւային զինուորներու համար:

Թ. Ր. ԱՐԱՍ, Թուրքիոյ արտաքին գործավարը, որ Փարիզ կը գտնուէր Աղեքսանտրէթի հարցին առթիւ բանակցելու համար, Պոլիս վերադարձաւ:

ՄԱՏՐԻՏԸ անխռով տօնակատարեց Ծնունդի օրը: Զօր. Ֆրանքօ իր հրամանատարութեան տակ առած ըլլալով բոլոր ազգայնական ուժերը, նոր յարձակողականի մը կը պատրաստուի:

ՌՈՒՄԱՆԻԱ եւս որոշեց հիւպատոսարան մը հաստատել Ատտիս-Ապէպայի մէջ, այսինքն ճանչնալ Եթովպիոյ իտալական գրաւումը:

ԳԵՐՄԱՆԻԱ ԳԱՑՈՂ ՕՏԱՐԱԿԱՆՆԵՐԸ 1937 յունուար 1էն սկսեալ միայն 30 մարքի գերմանական դրամ պիտի կրնան տանիլ, փոխանակ 60ի:

ԱՆԳԼԻԱՑԻ ԼՈՐՏ ՄԸ, Նըֆիլտ, 214 միլիոն ֆրանք տրամադրեց իր գործազուրկ հայրենակիցներուն: Ուրիշ գումարներ ալ հաշուելով, լորտը վերջերս 730,000,000 ֆրանք տրամադրած է մարդասիրական նպատակներու:



ԴՊՐՈՑԱՍԷՐԻ Տիկնանց Ընկերութեան վիճակահանէն շահած են հետեւեալ թիւերը.— 7, 29, 53, 60, 78, 82, 128, 158, 159, 170, 174, 187, 193, 195, 210, 218, 237, 244, 254, 257, 260, 267, 272, 275, 288, 292, 297, 303, 308, 317, 326, 352, 355, 385, 396, 397, 408, 412, 419, 420, 435, 440, 446, 452, 470, 480, 482, 492, 514, 517, 532, 544, 572, 573, 577, 588, 589, 601, 602, 621, 632, 633, 675, 677, 705, 717, 727, 745, 754, 758, 766, 769, 795, 803, 808, 820, 837, 844, 865, 868, 879, 887, 905, 914, 919, 922, 936, 945, 947, 958, 960, 963, 1010, 1014, 1021, 1032, 1040, 1056, 1060, 1062, 1065, 1066, 1072, 1098, 1118, 1140, 1144, 1165, 1177, 1197, 1198, 1202, 1206, 1213, 1217, 1221, 1230, 1232, 1250, 1256, 1268, 1272, 1281, 1284, 1290, 1298, 1304, 1305, 1319, 1320, 1331, 1335, 1345, 1355, 1360, 1362, 1373, 1381, 1394, 1395, 1403, 1409, 1420, 1428, 1438, 1439, 1452, 1461, 1494, 1499, 1504, 1513, 1525, 1528, 1534, 1536, 1566, 1572, 1579, 1582, 1597, 1621, 1629, 1636, 1646, 1659, 1675, 1699, 1700, 1701, 1704, 1706, 1718, 1725, 1730, 1749, 1775, 1776, 1785, 1790, 1821, 1829, 1837, 1840, 1849, 1856, 1858, 1868, 1870, 1874, 1879, 1903, 1904, 1906, 1907, 1912, 1967, 220, 1048, 1860:

ԾԱՆՕԹ.— Շահողներէն կը խնդրուի, մինչեւ մէկ ամիս պայմանաժամով, ներկայանալ Դպրոցասէրի վարչութեան, ստանալու համար իրենց պարգեւները: Կը յայտարարուի, որ այդ պայմանաժամը լրանալէն վերջ կատարուած դիմումներուն ընթացք չի տրուիր:




Le Gérant: H. STEPHAN

Imprimerie A. DER (AGOPIAN) 17, Rue Damesme, PARIS (13)

512 ՍԱԿԱՇԱՐԺ (*Թաքսի*) կը գտնուէր Մոսկուայի մէջ, 1936ի սկիզբը։ Ծրագրուած էր 450 հատ աւելցնել, բայց միայն 60 հատ կրցած են բանեցնել։ Միւս կողմէ 120 կառքեր անգործածելի դարձած են ։

ՊՈՒԼԿԱՐԻՈՅ ԵՒ ԵՈՒԿՈՍԼԱՎԻՈՅ ՄԻՋԵՒ դաշինք մը պիտի կնքուի մօտերս։ Պուլկարիա չընդունիր Պալքանեան դաշինքը եւ չի ճանչնար անով հաստատուած գոյավիճակը, բայց բարեկամական յանձնառութիւններ կը ստանձնէ Եուկոսլավիոյ հանդէպ ։ Ռումանական կառավարութիւնը հաւանութիւն յայտնեց նոր դաշինքին, իսկ Յունաստան եւ Թուրքիա կարգ մը վերապահումներ յայտնած են։

ԱՀՌԵԼԻ ՀՐԴԵՀ ՄԸ ծագեցաւ Պերլինի ստորերկրեայ երկաթուղիին մէջ (մեթրօ), սպառնալով շրջակայ շէնքերուն։ Երկրորդ արկածն է այս որ կը պատահի նոյն գծին վրայ։

ՑԱՆԿԱՐԾԱՄԱՀ ԵՂԱՒ Զօր. Զէքթ, որ գերմանական բանակին վարիչն էր 1920էն 1926։ Եօթանասուն տարեկան էր եւ փայլուն շրջան մը բոլորեց զինուորական ասպարէզին մէջ։ Ինքն էր որ վերակազմեց գերմանական բանակը՝ անոր պարտութենէն վերջը։ Պաշտօնական դիրք չունէր հիթլերական Գերմանիոյ մէջ, ժամանակին պայքարած ըլլալով ազգային-ընկերվարութեան դէմ։ Հիթլէր ցաւակցական հեռագիր մը ուղղեց, գերման ժողովուրդին համակրանք յայտնելով։

ԶՈՒԻՑԵՐԻՈՅ կառավարութիւնը ձեռնարկած է ամրութիւններ շինելու գերմանական սահմանին վրայ, ի նախատեսութիւն ապագայ վտանգներու ։

ԾԵՐԱԿՈՅՏԸ ՎԱՒԵՐԱՑՈՒՑ պարտաւորիչ իրաւարարութեան օրինագիծը, բուռն վիճաբանութիւններէ վերջ, որոնց կը մասնակցէր նաեւ վարչապետը։ Օրինագիծը կարեւոր փոփոխութիւններ կրած ըլլալով, յղուեցաւ երեսփ. ժողովին։





ՆՈՐ ՅԱՐՒՈՅ ԱՌԱՋԻՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄԸ ՈՒՐԱԽ ՕՓԷՐԷԹՈՎ
ՆՈՐ ՏԱՐԻՆ ՈՒՐԱԽ ՍԿՍԵՑԷՔ ՈՐ ՈՒՐԱԽ ՎԵՐՋԱՆԱՅ

## ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

*Դերասան Գ. ՏԷՐՎԻՇԵԱՆ կը ներկայացնէ հայկական օփէրէթ*

**ԱՊՈՒՇ ԱՐՇԱԿ**

*երաժշտութիւնը կը վարէ Թաւխթ ԺՕՐԺ ՇԱՀ-ՊԱՐՈՆԵԱՆ*

*10 Յունուար կիրակի երեկոյ ժամը 8.45ին*

**Sociétés Savantes**ի *սրահին մէջ։*

**8 Rue Danton, Métro St. Michel & Odéon**

*Կը մասնակցին՝ դերասաններ Ա. Գմբէթեան, Ա. Սարաֆեան, Գ. Մեհտերեան, դերասանուհիներ Ք. Մարտոնալտ, Գեղուհի Բաշճայր եւ ուրիշներ։*

ԳԻՆԵՐԸ ԽԻՍՏ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ, **5, 7,50** *եւ 10* ՖՐ.։

*Խճողումի տեղի չտալու համար կարգապահութեան լուրջ միջոցներ ձեռք առնուած են։*

Թուագրուած տոմսերը ապահովել՝ գրատուն Հ. Սամուէլէն,
51 rue Mr. le Prince

**Ընտանեկան հանդէս-խնջոյք Նոր Տարիի առթիւ**

*Համախարբերդ-ցիական միութեան Վալանսի մասնաճիւղին կողմէ*

31 դեկտ. հինգշաբթի երեկոյ ժամը 8.30էն մինչեւ լոյս,

*կը խօսի* ԳՐԻԳՈՐ ԽԱՅԻԿԵԱՆ

գեղարուեստական բաժին,

կը հրաւիրուի հայ հասարակութիւնը անխտիր, շասոյթը Նոր-խարբերդի շին եթեան։


Le Gérant: H. STEPHAN

Imprimerie A. DER (AGOPIAN) 17. Rue Damesme. PARIS (13)


## ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐ

*կազմակերպուած Ֆ. Հ. կապոյտ Խաչի Անկէնի մասնաճիւղին կողմէ*

3 Յունուար, կիրակի կէսօրէ վերջ ժամը 2.30ին,

Cascade du Lac*ի սրահին մէջ* (Լճին մօտ)։

*ԿԱՂԱՆԴ ՊԱՊԱ, փոքրիկ ներկայացում մը, նուէրներ, արտասանութիւններ եւ նախընթրիք։*

մեծերու համար մուտք 3 ֆր.։

## ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐ

*Ֆ. Կ. Խաչի Շավիլի մասնաճիւղին կողմէ*

3 Յունուար, կիրակի կէսօրէ վերջ ժամը 3ին, դպրոցի սրահին մէջ.

4 rue des Trois Chantiers.

*Երգ, արտասանութիւն եւ «ՏԻԿԻՆ ՍԻՐԱՆ» կատակերգութիւն մը. փոքրիկներու կողմէ։ Նուէրներու բաշխում աշակերտներուն։*

Նախընթրիք եւ պտուղ կը բաժնուի բոլոր ներկայ փոքրիկներուն։

## ՏՕՆԱԾԱՌ

*ՓԱՐԻԶԻ ՀԱՐ. ՇՐՋԱՆԻ ՅԱՌԱՋԴԻՄԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԵԱՆ ԿՈՂՄԷ*

*ի նպաստ իր վարժարանին*

*3 Յունուար, կիրակի կէսօրէ վերջ ժամը 3ին,*

**150 Route d'Orléans,** *Պանեօ*

*կը ներկայացուի ՆՇԱՆ ՊԷՇԻԿԹԱՇԼԵԱՆԻ*

**1936Ի ԵՒ 1937Ի ՊԱՅՔԱՐԸ**

Ուտանաւոր կատակերգութիւն։

*Աշակերտութեան կողմէ խմբերգներ եւ արտասանութիւններ։*

*Թառ ու Պար եւ անակնկալներ։*

*Մուտք 3 ֆր։*

## ԿԱՂԱՆԴԻ ԾԱՌ

*Փորթ տ'Իթալիի Դպրոց. Տիկնանց Մասնաճիւղի զոյգ վարչութեանց*

2 Յունուար, շաբաթ կէսօրէ վերջ ժամը 2ին. Գ. Յովհաննէսեանի սրահը,

13 rue Pierre Curie, Kremlin Bicêtre.

*Երգ, արտասանութիւն, ներկայացում դպրոցի աշակերտներուն կողմէ։*

*Կաղանդ Պապան նուէրներ կը բաշխէ աշակերտներուն։*

Նուէրները տրամադրած է Համազգայինի Ֆրանսայի կեդր. վարչութիւնը։

*ՄՈՒՏՔ 3 ՖՐ.։*

## ԽՆՋՈՅՔ-ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

*Ֆ. Կ. Խաչի Իսի լէ Մուլինոյի մասնաճիւղին կողմէ*

3 Յունուար, կիրակի կէսօրէ վերջ ժամը 3էն մինչեւ երեկոյ,

գարակէօզեանի սրահին մէջ, Րիւ տը լա Տէֆանս. Իսի։

*Գեղարուեստական բաժին։ Հայկական եւ եւրոպական պարեր։*

*Մուտք 2 ֆրանք*

## ՀԱՆԴԷՍ ԵՒ ՎԻՃԱԿԱԽԱՂ

*Ֆ. Կ. Խաչի Պուլվառ Օտտօի ենթամասնաճիւղին կողմէ*

3 Յունուար կիրակի կէսօրէ վերջ ժամը 2.30ին, Պառ Էնթերնասիօնալի մէջ

*կը խօսի՝ Պ. Ա. ՄԱՐՏԻՐՈՍԵԱՆ, նիւթ՝ «Հայ կնոջ դերը»*

*ԵՐԳ, ԱՐՏԱՍԱՆՈՒԹԻՒՆ ԵՒ ԽՄԲԵՐԳ ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ԿՈՂՄԷ*

*1.— Կը ներկայացուին՝ ՄԱՅՐ ՀԱՅԱՍՏԱՆ, 2.— Թատերախաղ մը պզտիկներու կողմէ, 3.— Զաւեշտ մը՝ ԱԴԱՄԵԱՆ ԹԱՏԵՐԱԽՈՒՄԲԻն կողմէ։*

Հանդէսէն վերջ ընկերահաւաքական խնջոյք։

*Մուտքը՝ վիճակախաղի տոմսով.*

## «ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐ»ը Լիոնի մէջ

*Ֆ. Կ. Խաչի Մասնաճիւղին կողմէ*

2 Յունուար շաբաթ երեկոյ ժամը 8.30ին Յրդ Թաղապետարանի սրահին մէջ

*կը նախագահէ Պ. ԿԻՒՐԵՂ ԽՐԱՅԵԱՆ*

*Արտասանութիւններ, երգեր, պարեր եւ տրամախօսութիւններ մանուկներու կողմէ։*

*Կաղանդ պապան երախաներուն պիտի բաժնէ պտուղ եւ խաղալիքներ։*

Մուտք *1* ֆրանք։

Մարսէյլ—Փրատոյի Մայր եկեղեցիի վարչութիւնը կը հաղորդէ յառաջիկայ տօնական օրերու հետեւեալ ժամանակացոյցը.—

1 Յուն. ուրբաթ, Նոր Տարի, կը մատուցուի Ս. Պատարագ։ Ներկայ կ'ըլլայ Պատուիրակ Սրբազանը եւ կը քարոզէ։

5 Յուն. երեքշաբթի, ճրագալոյց Ս. Ծննդեան։

*6* Յուն. չորեքշաբթի, Ս. Ծնունդ. կը մատուցուի պատարագ։

7 Յուն. Բ. օր Ծննդ. Մեռելոց. Պատարագ։

*10* Յուն. կիրակի, Ծննդեան եւ Մկրտութեան արարողութիւն, կը պատարագէ եւ կը քարոզէ Պատուիրակ Սրբազանը։

Բոլոր արարողութեանց կը մասնակցի երկսեռ դպրախումբը՝ երգեհոնով։

ՕՐ. ԳԱՏՐԻՆԷ ՊԱՊԻԿԵԱՆ
(Մարզուանցի)
*եւ*
ԲԱՐՈՒՆԱԿ ՂԱԶԱՐԵԱՆ
(Տրապզոնցի)
ՆՇԱՆՈՒԱԾ

Փարիզ





ՅՈՌԱՋ Ս. ԼԱՆԻԿԻ ՄԷՋ

*կը ծախուի Շիմշի գրատունը, ... չկի փողոց։*

Ծանօթ հրապարակագիր Պ. Արամ Անտոնեան, Նուպարեան Մատենադարանի վարիչը, դժբախտութիւնն ունեցած է կորսնցնելու իր կինը, ՏԻԿԻՆ ԱՐՍԻՆԷ ԱՆՏՈՆԵԱՆ, որ մեռաւ դեկտ. 26 շաբաթ առտու, ժամը 5ին: Յուղարկաւորութիւնը կատարուեցաւ Փարիզի հայոց եկեղեցին, մտերմական շրջանակի մէջ, երկուշաբթի, 28 դեկտեմբեր, կէսօրէ վերջ ժամը 3ին:

Մարմինը ամփոփուեցաւ Թիէի գերեզմանատունը, ընտանեկան դամբարանին մէջ:

Մեր խորին ցաւակցութիւնները, այս տխուր առթիւ:

## ԸՆԿԵՐԱՀԱՄԱԿՐԱԿԱՆ

### Ընտանեկան խնջոյք — ճաշկերոյթ

*Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Մարսէյլի «Ռոստոմ» եւ «Իշխան» ենթակոմիտէներու եւ «Վահագն» խումբի*

ՀՈՎԱՆԱՒՈՐՈՒԹԵԱՄԲ ՇՐՋ. ԿՈՄԻՏԷԻ

*Տեղի կ'ունենայ Յունուար 3ին, կիրակի կէսօրէ վերջ ժամը 2.30ին «Շահրիկեան» սրահին մէջ:*

Տախքերու մասնակցութեան համար 4 ֆր.,
Տասը տարեկանէն վեր փոքրերուն՝ 2 ֆր.:

*Մանրամասնութիւնները տեղւոյն վրայ:*

## ՏՕՆԱԾԱՌ

*ՓԱՐԻԶԻ ՀԱՐ. ՇՐՋԱՆԻ ՅԱՌԱՋԴԻՄԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԵԱՆ ԿՈՂՄԷ*

*Ի նպաստ իր վարժարանին*

*3 Յունուար, կիրակի կէսօրէ վերջ ժամը 3ին,*

**150 Route d'Orléans,** *Պանեօ*

*Կը ներկայացուի ՆՇԱՆ ՊԷՇԻԿԹԱՇԼԵԱՆԻ*

1936Ի ԵՒ 1937Ի ՊԱՅՔԱՐԸ

Ուսանելոր կատակերգութիւն:

*Աշակերտութեան կողմէ խմբերգներ եւ արտասանութիւններ:*

*Թառ ու Պար եւ անակնկալներ*

*Մուտք 3 ֆր.*

## ԸՆՏԱՆԵԿԱՆ ԽՆՋՈՅՔ_ԵՐԵԿՈՅԹ

ՆՈՐ ՏԱՐՒՈՅ ԱՌԹԻւ

*Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Պօմոնի Զաւարեան ենթակոմիտէի եւ մասնակցութեամբ Վարանդեան խումբի*

2 յունուար շաբաթ երեկոյ ժամը 8ին, վարանդեան սրահին մէջ,
10 Bld. de Margueritte, Beaumont

*Կը նախագահէ ընկ. Հ. ՊԱՍՄԱՃԵԱՆ*

ԿԸ ԽՕՍԻ ԸՆԿ. ***ՀԱՅԿ ՄԵՐԷՆԿԻՒԼԵԱՆ***

*Գեղարուեստական ճոխ բաժին, երգ, արտասանութիւն, նուագ եւլն.:*

*Կը ներկայացուի՝ «ԴԴՈՒՄԻ ՎԱՃԱՌԱԿԱՆԸ»*

Կերուխում մինչեւ առաւօտ: Սրահին տաքութիւնը ապահովուած է:

Տախսերու մասնակցութիւն 2 ֆր.

## Հանդէս եւ Վիճակախաղ

*Ֆ. Հ. Կ Խաչի Պուլվար Օտտօի ենթամասնաճիւղին կողմէ*

տեղի կ'ունենայ 3 յունուար, կիրակի կէսօրէ վերջ ժամը 2.30ին,
Պառ էնթէրնասիօնալի մէջ:

*Կը նախագահէ եւ կը բանախօսէ* Պ. Ա. ՄԱՐՏԻՐՈՍԵԱՆ

նիւթ ունենալով՝ «Հայ կնոջ դերը»:

ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ՃՈԽ ԲԱԺԻՆ

Պիտի ըլլան երգ, արտասանութիւն, խմբերգ սանուհիներու կողմէ
1.— Պիտի ներկայացուի *«Մայր Հայաստան»*, 2.— Գեղեցիկ տրամ մը՝ խումբ մը պզտիկներու կողմէ, 3.— Խիստ ծիծաղաշարժ զաւեշտ մը՝ *Ադամեան* թատերախումբին կողմէ:

*Հանդէսէն վերջ տեղի պիտի ունենայ ընկերահամակրական խնջոյք:*

*Մուտքը՝ Վիճակախաղի տոմսով.*

## ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐ

*կազմակերպուած Ֆ. Հ. Կապոյտ Խաչի Անկէնի մասնաճիւղին կողմէ*

3 յունուար, կիրակի կէսօրէ վերջ ժամը 2 30ին,
Cascade du Lach սրահին մէջ (Լճին մօտ):

*ԿԱՂԱՆԴ ՊԱՊԱ, փոքրիկ ներկայացում մը, նուէրներ, արտասանութիւններ եւ նախընթրիք:*

Մեծերու համար մուտք 3 ֆր.:

## ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐ

*Ֆ. Կ. Խաչի Շավիլի մասնաճիւղին կողմէ*

3 յունուար. կիրակի կէսօրէ վերջ ժամը 3ին, դպրոցի սրահին մէջ
4 rue des Trois Chantiers.

*Երգ, արտասանութիւն եւ «ՏԻԿԻՆ ՍԻՐԱՆ» կատակերգութիւն մը. փոքրիկներու կողմէ: Նուէրներու բաշխում աշակերտներուն:*

Նախընթրիք եւ պտուղ կը բաժնուի բոլոր ներկայ փոքրիկներուն:

*Մուտք 2 ֆրանք*

## ՆՈՐ ՏԱՐՒՈՅ ԱՌԱՋԻՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄԸ ՈՒՐԱԽ ՕՓԷՐԷԹՈՎ

ՆՈՐ ՏԱՐԻՆ ՈՒՐԱԽ ՍԿՍԵՑԷՔ ՈՐ ՈՒՐԱԽ ՎԵՐՋԱՆԱՅ

## ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

*Դերասան Գ. ՏԷՐՎԻՇԵԱՆ կը ներկայացնէ հայկական օփէրէթ*

### ԱՊՈՒՇ ԱՐՇԱԿ

*Երաժշտութիւնը կը վարէ Թաւխթ ԺՕՐԺ ՇԱՀ-ՊԱՐՈՆԵԱՆ*

*10 Յունուար կիրակի երեկոյ ժամը 8.45ին*

**Sociétés Savants***ի սրահին մէջ:*

**8 Rue Danton, Métro St. Michel & Odéon**

*Կը մասնակցին՝ գերասաններ Ա. Գպէթեան, Ա. Սարաֆեան, Գ. Մեհտերեան, գերասանուհիներ Ք. Մաքսոնալտ. Գեղուհի Քաջայր եւ ուրիշներ:*

***ԳԻՆԵՐԸ ԽԻՍՏ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ, 5, 7,50 եւ 10 ՖՐ.:***

*Խճողումի տեղի չտալու համար հարգապահութեան լուրջ միջոցներ ձեռք առնուած են:*

Թուագրուած տոմսերը ապահովել՝ գրատուն Հ. Սամուէլէն,
51 rue Mr. le Prince

Մարսէյլ—Փրատոյի Մայր եկեղեցիի վարչութիւնը կը հաղորդէ յառաջիկայ տօնական օրերու հետեւեալ ժամանակացոյցը.—

1 յուն. ուրբաթ, Նոր տարի, կը մատուցուի Ս. Պատարագ, Ներկայ կ'ըլլայ Պատուիրակ Սրբազանը եւ կը քարոզէ:

5 յուն. երեքշաբթի, ճրագալոյց Ս. Ծննդեան:

6 յուն. չորեքշաբթի, Ս. Ծնունդ. կը մատուցուի պատարագ:

7 յուն. բ. օր Ծնունդ. Մեռելոց. Պատարագ

10 յուն. կիրակի. Ծննդեան եւ Մկրտութեան արարողութիւն, կը ատարագէ եւ կը քարոզէ Պատուիրակ Սրբազանը:

Բոլոր արարողութեանց կը մասնակցի երկսեռ դպրախումբը երգեհոնով:




Le Gérant: H. STEPHAN

Imprimerie A. DER (AGOPIAN) 17, Rue Damesme, PARIS (13)


## ԽՆՋՈՅՔ_ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

*Ֆ. Կ. Խաչի Իսի լէ Մուլինոյի մասնաճիւղին կողմէ*

3 յունուար, կիրակի կէսօրէ վերջ ժամը 3էն մինչեւ երեկոյ,
գարսլէօզեանի սրահին մէջ, Րիւ տը լա Տէֆանս, Իսի:

*Գեղարուեստական բաժին: Հայկական եւ եւրոպական պարեր:*

## ՀԱՅԿԱԿԱՆ ԿԱՂԱՆԴ

ՍԻՓԱՆ—ԿՈՄԻՏԱՍ ԵՐԳՉԱԽՈՒՄԲԻ ՏՕՆԱԾԱՌԸ

*2 Յունուար, շաբաթ երեկոյ ժամը 21էն մինչեւ առաւօտ,*

*Հայ Երիտասարդաց Միութեան սրահին մէջ,* **8 Rue Bossuet**
Place Lafayette, Métro Gare du Nord կամ Poissonnière

**Orchestre,** *անակնկալներ եւ ճոխ պիւֆէ:*

*Տախսերու մասնակցութեան համար մուտք 3 ֆր.:*

ԾԱՆՕԹ — երգչախումբի վիճակախաղը տեղի կ'ունենայ նոյն երեկոյ:

— o —

*Սիփան-Կոմիտաս երգչախումբի տարեկան ցերեկոյթ-պարահանդէսը* **Salle Hoche***ի մէջ. 21 փետր.: Նկատի ունենալ այդ թուականը:*

## ԿԱՂԱՆԴԻ ԾԱՌ

*Փորթ տ'Իթալիի Դպրոց. Տիկնանց Մասնաճիւղի գոյգ վարչութեանց*

2 յունուար, շաբաթ կէսօրէ վերջ ժամը 2ին. Պ. Յովհաննէսեանի սրահը,
13 rue Pierre Curie, Kremlin Bicêtre.

*Երգ, արտասանութիւն, ներկայացում դպրոցի աշակերտներուն կողմէ:*

*Կաղանդ Պապան նուէրներ կը բաշխէ աշակերտներուն:*

Նուէրները տրամադրած է Համազգայինի Ֆրանսայի կեդր. վարչութիւնը:

*ՄՈՒՏՔ 3 ՖՐ.:*